## Նորանոր խստութիւններ Գերմանիոյ մէջ

Նախարարական որոշումով, կառավարութիւնը իրաւունք ունի հպատակութենէ զրկելու այն քաղաքացիները որոնք այդ հպատակութիւնը ստացած են 1918 նոյեմբեր 9էն 1933 յունուար 30ի շրջանին: Այս տրամադրութեան ենթակայ են նաեւ արտասահմանի այն Գերմանացիները որոնց ընթացքը վնասակար կը համարուի Գերմանիոյ համար: Հպատակութենէ կրնան զրկուիլ նաեւ այն Գերմանացիները որոնք երկիր չեն վերադառնար, Ներքին գործերու նախարարին մէկ հրամանին վրայ: Այդ պարագային իրենց գոյքերն ալ պիտի գրաւուին:

⁂ Ներքին նախարարը շրջաբերականով մը կը ծանուցանէ թէ իբրեւ գերմանական բարեւ ընդունուած է Փաշական (հռոմէական) բարեւը, հետեւաբար բոլոր քաղաքային պաշտօնեաները պէտք է ողջոյն տան աջ թեւը բարձրացնելով:

⁂ Դպրոցական արձակուրդի շրջանին, օգոստ. 1էն մինչեւ հոկտ 15, այն ուսանողները որոնք իրենց ուսման շրջանի չորրորդ վեցամսեային մէջ են, աշխատանքի պիտի կանչուին: Ասոնց թիւը 4000ի կը մօտենայ: Ապագային պատկաւորներն ալ պարտաւորիչ աշխատանք պիտի կատարեն, համալսարանական ուսման հետեւելէ առաջ:



## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Խորին կսկիծով մեր ցաւակցութիւնը կը յայտնենք Գրիգոր Այանեանի, իր ընտանիքին եւ պարագաներուն ընկեր ՊՕՂՈՍ ԱՅԱՆԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ:

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԳԱՊԱԳՃԵԱՆ

Կրընոպլ — 12 յուլիս 1933

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Բարձր Հայքի Երիտասարդաց միութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Ս. Տօկոյեանի պարագաներուն, իր քրոջ դառնաղէտ մահուան առթիւ որ տեղի ունեցած է 1933 յունիս 13ին Երեւանի մէջ, 32 տարեկան երիտասարդ հասակին մէջ:

ՄԱՐՍԷՅԼԻ ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



ԼՈՅՍ ՏԵՍԱԾ է 14(ՔԵՐԹՈՒԱԾ)-դիմել հեղինակին N. SARAFIAN, 20 ave. du Petit Parc Vincennes, Seine.

Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

